ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԳՐԱԴԱՐԱՆ ԹԻՒ 6

# ՍԱՍՈՒՆՑԻ ԴԱՒԻԹ

ԿԱՄ

# ՄՀԵՐԻ ԴՈՒՌ

ԾՐԱԳՐԵԱՑ

*Գ. Վ. ՍՐՈՒԱՆՁՏԵԱՆՑ*



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ
ՓԻՇԹՕՖՃԵԱՆ ԵՂԲԱՐՑ
«ԱՐԱՄԱԶԴ» ԳՐԱՏԱՆ





1910
ՏՊԱԳՐ. ՕՆՆԻԿ ԲԱՐՍԵՂԵԱՆ ԵՒ ՈՐԴԻ
ՂԱԼԱԹԻԱ-Կ. ՊՈԼԻՍ

# ՍԱՍՈՒՆՑԻ ԴԱՒԻԹ

## ԿԱՄ

# ՄՀԵՐԻ ԴՈՒՌ



### Ա.

ԲԱՂԴԱԴՈՒ խալիֆէն շատ զօր ու զօրմալ կ՚ըլնի. ագգար կ՚ենէ՝ կ՚իգայ վըր մեր սարեր Կապոյտասար. շատ զմեր ազգ կը նուազցու, ու շատ ձէօր կը բռնէ տանէ։

Աղջիկ մի ուրնէ շատ խորոտիկ կ՚ըլնի. Բաղդադու խալիֆէն զըդ աղջիկ կ՚առնէ կը բերէ վըր ուրան։ Մէկ ժուկ մ՚ու ժամանակ մէջ կ՚ընցնի, երկու տղայ ուրնէ կ՚ըլնի. մէկի անուն կը դնեն Աբամելիք, ու մէկին Սանասար։

Պապ կռապաշտ է. ու մամ խաչապաշտ (չունքի զմամ մեր ազգէն տարան)։

Ըդ խալիֆէն հէյմ՚ ըէ ազգար էրեց ու եկաւ վըր մեր ազգին։ մեր ազգ, (մնոնիմ ուր սարեր Հրաչքին, սարեր Կարապետ,) իդ անգամ զենք շատ նեղ ըծեց. ու իդ նեղութենի մէջ՝ խալիֆէն կանչեց զուր կուռք, ու ասեց.

—Եա ծոչ կուռք, զու զէս ազատ էնես էդա ազգէց, ու յետոյ ես սալամար իղամ, զիմ երկու տղէն ըէ քըզի մատաղ ա՚նեմ—։

Ուրանց մամ քնաւ, տեսաւ էրազ։ Տեսաւ որ, ուրան երկու ծրագ կ՚էր, կ՚իգէր առջև ընցներուն որ ընցնէր, ու կը զարնէր հէյմ՚ ըէ լուս կ՚ըտէր։

Երաւ առաւօտ, յետոյ ախպա, զուր էրզի երկութեն խաա էրեց ուր աղէկներուն, ու ասեց.

—էս զիչեր, սըր Կարապետ ընձի երած էկաւ ասեց որ, ձըր պապ ընկեր է նեղութենի մէջ, ու զձըզի մատաղ է կանչել ուր կուռքերուն. յետոյ էկաւ, զձըզի կը մատղէ։ Դուք ձըր ճարէն զտէք—։

Երկու աղբէր կանչեցին զուրանց Աստուած. եկան Վերցին զուրանց զաւաշեն, ու լէցցին յադրուքէ մի փա-

րայ ու ընկած ծառերուն։ Ընկան, ու չատ տկարութեան. զարկեցին էկան ղարիպ երկիր։ Էկան գացին նոր ձոր մի։ Տեսան որ՝ գետ մի կ'երթէր կ'ընթանէր. առու մի ընդէկէն կ'երթէր կը զարկէր մէջ էդ գետին. կը կտրէր ըղէ գետու կը չերտէր չուր 'ի մէջնեն. ու հրաշամ՝ ըէ կը խառնուէր մէջ էդ գետին ու կ'երթէր։

Սանասարին Աղամէլիքին ասեց. — Թը՝ որն որ զըղայ ջրի ակ զանէ, ու ըուր առուն ըէ ասէկէ վըր երթա ջրին, ընդրայ ալլահ ըէ որ եղնի՝ հըմըրայ զօրեղ կ'եղնի —։

Էկան, առան զառուն, ու գացին երկու աղբեր։ Գացին ու զառան զաղբրուր։ Էդ աղբրի ջուր՝ լուլէ մի ջուր է. կ'իջայ կը կտրէ բրխամ զուր ակու առուն, ու հեղի՞ ըէ կը դառնայ, հեղի՞ ըէ կը խառնուի առուն։

Կը նստին վըր էդ ական, ու զուրանց բերդի հիմ կը թափին։

Սանասար կ'երթէր Գեջիր, ու Աղամէլիք կը դառէր վըր բերդին։ Շէնկեք էդ վերքեր չկէր։

Մէկ սառ՝ քանի օր բանան վըր էդ Քօշկին։ Աղամէլիք էկաւ ընկէկ օր, տեսաւ որ՝ Սանասար թաչկեր էր ու քուն ընցեր էր վրէն. արընդոտ Գեջիրներ հըմար անեփին թափեր էր 'ի գետին ու քներ էր։ Շա՛տ կսկծաց էդուր օղուրին, ու ասեց.

— Աղբէր, էլի էրթանք. յար 'ի յէր ուխտի մեանք մենք հուղայ, ու անդի մէկ ուտենք։ Աստուած՝ որ խօսէր մըղի, մըր պալատ քօշկն ու սարէն կ'խօսէր։ —

Երկու աղբէր հէծան, ու խըրս էրեցին Աղբրանոյ նստեղին ու էկան։ Էկան գացին էդ մարդուն եր՚ու աղբէր բահանայ հրեցին, ու կոյնան էառ։ — Ահագին ու քու Քէֆով զըռբըդըսդ (զարդը գէտ) մարդ էն էդ երկու աղբէր։

Արղամ նստող Ամիրէն չատ հըդ էրեց էդուրց

մօտէն. Հարցուց զուրանց խեւ ու չխեւ, ու ասեց:

—Դուք ի՞նչ մարդ էք:

Սանասարն ասեց.

—Մենք Բաղդըդու Խալէֆի տղէկներն ենք:

Ըդ Ամիրէն ասեց.

—Հա՜յ, հա՜յ, հա՜յ . . . . . . (ու թխթուեց զուր փողպատ ըղունց մօտէն): Մենք ըղունց մեռելներուց կը փախնինք, ըղունց կենդընուն ռաստ կ'իգանք:

Մենք ձեզի տէր չենք կրնայ ենել. յո՛ւր մի կ'եր- թաք գացէք—:

Սանասարն ասեց Աբամէլիքին.

—Աղբէր, մենք էղ պապու մօտէն կը փախնինք. զըղոր անուն մըր մրէն հօրի ենք դրի. ըստի յո՛ւր որ գացինք, որն որ հարցուց, ա՛ասինք՝ Մըղի բան չկայ, նը պապ, նը մամ, նը տուն, նը վաքան: Բըլէմ խըլխ զմըղի տիրեն—:

Հնկուց զարձան եսեւանց, գօրկեն գացին մօտ Ղարայ Դառող Ամիրէն. էն էլ գըղ պատճառ տուեց ըղ տղէկներուն: Ու ընոնք էղ տեղէն դարձան. խըլուս էրե- ցեն իրա հեղ Կապուտկողի թաղաւորին, ու գացին:

Կապուտկողի թաղաւոր զըղ մարդիկ տեսաւ, չատ հըզ էրեց ըղունց մօտէն: Աբամէլիք թամանայ եղաւ ու կայնաւ ըղուր տօքեւ, չատ զուր էկաւ ըղ թագաւորին.

Հարցում էրեց ըղունց մօտէն թէ,

—Օղուլ, դուք յուտա՞յ էք. ի՞նչ ունիք. ի՞նչ չունիք:

—Թո՛ւյ բանմ' ըլ չունինք, ասեցին. նը մամ, նը պապ, թու թաբայ չունինք—:

Սանասարն եղաւ չբուղջի, ու Աբամէլիքն եղաւ դայխաջի: Մէկ ժամանակ ըղունք հըմըլայ կեցան:

Օրերուց մէկ՝ Սանասար Աբամէլիքին ասեց.

—Էդ խոստր ամազ կերանք ու մեր խորքէն հըման մնայ։ Լուսոն, ասեց, ոչ գուն պայխա եփէ, ոչ են Չըբուղ կպում խամ, սուրսուն չերթանք ուրան երեսան—։

Կապուտակողը էդ թագաւոր քնաց խմցաւ։ Նր էն կայ, նր էն։ Էդ հաղ կանչեց զէդ մարդիկ, ասեց եկաւ թագաւորն, ու ասեց,

—Օղուլ, ախըր ես Լաոզ ասեցի ձըզի թէ, ձըզի ի՛նչ կայ, մա՛մ, պա՛պ. ու դուք պատմուեն էրիք թէ՝ Մըզի բան չկայ։ Դուք գծըր մաղէն ինչի վրայ էք էրե—։

Ասեցին.

—Թագաւորն ապրած կենայ, մենք՝ որդեմաց է, մամ ու պապ չունինք, մա՝ քենէ պահենք, Աստըծուց ի՛նչ պահենք. Ամազ մէկ խոբքի մի տուեր ենք մէ փիչ, ու թուկեր ենք էկե։ Իդա օրինակ ապրուր մի։ Ու նազլ էրեցին ուրան—։

Թագաւորի սիրտ կըռչաց վըր էղուշ, ասեց.

—Օղուլ, չըմեք հըման է սուտուն ձըզի քանի մի տուն կ'խամ, ու գացէք գծըր ըէրդ չինէք—։

Էդ թագաւորն էրաւ տուեց էղուշ քասուն տուն։

—Հէ՛յ գըօշի տուն... ամէկուն մէկ էչ ու մէկ ճախրակ—։

Սասուտուն էրան բարձան գուրանց տներ, ու երկու տըրէր խոսս էրեցին ուրանց խորքին ու գացին։ Գացին էրան վըր ուրանց տըրրին ու վըր ուրանց հեման։

Սամսապն ասեց Արամէնիքին,

—Ակյալ գիդա բե՛րդ չինենք, թէ չէ գիդա Ձախիր Ցուխարի ախաճիֆ—։

Արամէնիք ասեց.

—Սաղ չինենք գէդանց ախաճիֆ, ու նոր չինէ գծըր բերդ. էդ Ձուխարէֆ չէն կ'ռնայ արեւուն առջեւ կենայ—։

տուն էք զարկե, ըղըրա անուն տ'եղնի ՍԱՆՍՈՒՆ, Սասուն—:

Մէկ ժամանակ մանցին հողի, քեռի Թորոս լէ կար-գեցին, ու էն լէ մնաց հոնի. ու թագաւոր դարձաւ ուրան տեղը:

Սրամէլիք շատ զօրընդեղ մարդ էր. Սեւ սարի բոլոր՝ ու չուր ի Ծծմակայ քիթ՝ Մշու վերեւով պատան քա-շած եղած են չուրի Սեղանսըրու զօտէնը վի ձապաղ-ջրու դուրան ու զըդ բիթունն լէ զավթեց: Ձորս դարգահն լէ թողեց. ու մինչա հանապազ կը զարկէր զուր դարգահն ու կը հեծնէր զուր ձին, ու ինչ խսար չին ու չանավար եղնէր, կը բռնէր:

Օրերուց օրմ՝ լէ զարկեց գնաց չուրի Մըսըր, ու Մըսըր լէ զավթեց. գնաց գիշեր ըղ Մսրայ կեցողի կըն-կան խեւ պառկաւ. ու եղաւ իրնէ ավլաս մի: Ու Մսրայ թագաւոր լէ իմցաւ որ ըղ տղէն Սրամէլիքիցն է, չընի ըղըրայ անուն Սրամէլիք էր, զտղի անուն լէ դրեցին Մսրամէլիք: Ու Սրամէլիք լէ սպանեց զՄսրայ թագաւոր. առաւ զըղըրա կընիկ, ու նստաւ Մըսըր. եղաւ թագաւոր:

Ըղի թող մնայ ըղ տեղ նստուկ:

Բ.

Սանասար նստուկ էր Սասուն. ուր պապու կոքեր չին թողի որ ըղի սըթրէր, ու ելաւ խըրս էրեց ուր պա-պուն ու մամուն ու գնաց Բաղդադ: Ուր պապ նստուկ էր փանջարէն, տեսաւ որ ուր տղէն Սանասար կ'ի-գէր. ու ճանչցաւ, ու ասեց.

—Էյ, մեռնիմ քըղի մեծ կուռք, իմալ դքո մատաղ քաշիր բերիր. յար յե՛ր է մանցե՝ զմըլկեր լէ կը քաշես բերես—:

Մամ, չինքի խաչապաշտ էր, նստաւ ուր տղէկներն ապով արտունք թափից:

Պապ առեց թուր ու սուր ու գնաց կանչեց ու ասեց.

—Արի երթանք, որդի, երկրպագութեան արա մեծ կռուքին, որ զքըզի մատղեմ—:

Առեց տղէն.

—Արօ՛. քո ծոյ կուռք չատ զօրաւոր կուռք է, գիշեր լէ չըր թողնե, որ մենք ընանեղ սրբբրվեՑf. յար յիր է մանկի՝ զուր մէկէլ մատաղլէ կը քաշէ ու կը ըերէ—:

Առաւ զտղէն, ու մտան կռքատուն:

Տղէն պապուն ասեց.

—Արօ. չէ՞ դու գիտես որ մենք գացինք՝ մենք պըտ-տիկ էինք. մենք զքո կռքի զօրութիւն չինք գիտե. դէ՛ դու կղի քո կռուքին երկրպագութեան տուր, իչեմ ի՛մալ կ՚իտաս, ուսնեմ—:

Պապն ասեց.— Հըմլայ, լաօ.— ու կզաւ երկրպա-գութեան տուեց:

Տղէն ասեց.

—Արօ. քո կուռք ի՛նչ զօրաւոր կուռք էր. որ դու յերոր կզար, իմ աչքիր մթնեց, չտեսայ ի՛մալ էրեցիր: (Զրնէի չհասաւ որ առջի դրբին զարկէր, մալուբի կոծկ-ներ չարձկվաւ:) Ասեց. Արօ, Արօ, իզա հայլէ երկըր-պագութեան էրէ, տեսնենք ի՛մալ կէնես որ ես լէ էնեմ—:

Ու հեղմ՝ լէ յերոր կծաւ պապ, տղէն ասեց. «Ես հացն ու գինի, տէրն կենդանի». ու կուրզ մի իջաւ, ու զուր պապ Խալիֆէն եօթն գազ գետին մև իջուց: Առեց զկուրզն ու ինկաւ մէջ կռքերուն, զըմէն լէ ջարդեց, ու առաւ զարծըթներ լցեց ուր մալուբի փէշ, ու բերեց տուեց ուր մամուն, ու ասեց.

—Մամօ, իղոնք էրե քըզի զէնաք—:

Մամէ կզաւ վըր քիթ ու բերնին երկրպագութեան էրեց, ու ասեց.

—Գոհանամ քենէ երկնի ու երկրի ստեղծող, զա՛յ որ զմըզի ազատ էրեցիր էն զալըմի ձեռնէն— :

Բերեց զՍանասար փակեց, ու պապու տեղ դրեց վըր բախթին : Ընի ընտեղ մնաց : Դառնանք Աբամէլիքի վրէն :

Գ.

Աբամէլիք, որ նստուկ էր Մըսըր, զուր մօտից եղող տղէն զՄսրամէլիք թողեց ուր տեղ. ու ինքն էկաւ ի Սասուն : Մէկ ժուկ մ'ու ժամանակ ըղ մէջ ընցաւ. քընիմ տղայ ըղուրա մօտից եղան. մէկի անուն դրեց՝ ՃՆՃՂԱ–ՓՈՔՐԻԿ, ճոչ տղի անուն դրեց՝ ՑՈՒԱՆՎԷԳԻ, մէկին ՁԷՆՈՎ ՈՎԱՆ, մէկի անուն լէ՝ ԽՈՐԳՈՒՍԱՆ, ու յըմնու պստիկի անուն լէ՝ ԴԱՒԻԹ :

Էդ տղեկներու մէջ Ճնճղափոքրիկն ու Ցուանվէգին խելի բանի պէտք չիգէն : Ըմա Ձէնով Ովան հըմայ ձէնով էր որ եօթն գոմշու կաշի կը թայէր արեւ չորցնէր, ու կը փաթթէր զինք, ու կը բոռէր, որ չեղնէր պատռուէր :

Դաւիթ քընց զըմէնըլէ հընարով էր, ուր զօրութեն՝ էլ լեզւով բարիշ չեղնի :

Իդա անգամ մէկ ժուկ ու ժամանակ մնաց, հալւո–րաւ Աբամէլիք. օր մի օրերուց ինք ու կնիք նստաւ ու դուշուրմիշ եղաւ, ասեց.

—Զորս կողմ եղաւ ընձի դուշման, ետեւ իմ անց–ման էլ ո՞ր իմ ճժերուն տիրութեն ա՛նէն. թէ որ էնէ՝ պտի Մսրամէլիքն էնէ. էլ բաշխա մարդ չկըննայ դիմա–նայ իմ դուշմներաց— :

Էկաւ խըրս էրեց Մսրամէլիքին ու գնաց : Ծեր ժա–մանակն էր : Ասեց.

—Մսրամէլիք, օղուլ, դու լէ իմ ավլադն ես. թէ ես չուտ մեռայ, իմ ճժեր ամանաթ քըզի, թէ դու չուտ

մնար, քու ձմեր ամանոր ընձի. ես կը պահեմ—: Դարձաւ ու եկաւ, մնայ ուր բերդ: Մահու օրն եկաւ, մեռաւ:

Մսրամէլիքն էկաւ զըղրա ձմերն առաւ ու գնաց. չունէի զուր պայտը բանալին չըր մոռցի: Եօթն տարի Սասուն սուզ մնաց Արամէլիքի մեռնելուց ետեւ:

Օրերուց մէկ նստան ու զրեցին գինեխում քեռի Թորոսն ու գեղացիք:

Գեղացիքն ասեցին.

—Քեռի Թորոս, մըր տղէկներ հալւորան, ու մըր աղջիկտիք պառւան, թը դու կ՚ինաս թը մըր եօթ տարի սուզ պահելով մըր Արամէլիք կը սաղնայ, եօթ լէ ալի կը պահենք—:

Քեռի Թորոս իզին տուեց զուր զըրկցներուն. ու ասեց.

—Կարդէք զձըր տըղէկներ ու աղջըկտիք. սուզ պահելով բան չելնի—:

Դրեցին զուրանց գինուխում ու քէֆ էրեցին: Քեռի Թորոսն առեց զկթխէն ի ձեռք. կայնաւ. ու մխոք արեց. նը կը խմէ, նը կը զնէ: Թորոսի տղէն ի փողանէն ձէն տուեց պապուն, ու ասեց.

—Արօ, ըղունք Սասնոյ ծուերն են. մկայ մէկ խամ խօսք քե կ՚ասեմ. եա խմէ, եա դիր գետին քէլէ—:

Պապ վերցուց տղին ասեց.

—Հէ՜յ չան որդի. ես նստիմ հողայ կերուխում էնեմ, Մսրամէլիքն իգայ տանի զմըր ձմեր. զԱրամէլիքի տղէկները զըրթըփէ, ես նստիմ հողայ կերուխում էնեմ. ամօթ չէ՞ մըզի. «Հաց գինի ու տէր կենդանի», քըն զըդ կըթխէն էւել խմած չեղնիմ. ելնեմ երթամ իմ ձմերուն երեւան—:

Քեռի Թորոս Սասնու զարկեց ու գնաց ի Մըսըր.

ղօնըռմիս եղան ինք ու Մսրամէլիք. ու նստան. ասեց.

—Հայդէ, ես ու դու Սասնու դատաստուն: Ղորդ է, դու ու Մսրամէլիք իրար հետ սանաշլամիշ եղեր էք, ամա գերին գին եղնի, տիրուն կը հասնի—:

Էլան ու գացին ճարեար. ձմեր հասաւ քեռի Թորոսին:

Մսրամէլիքի աչք շատ կը վախենայ ըղ ձմերուց. քեռի Թորոսին ասեց.

—Եւ ՚արի զըղ ձմեր ընցու իմ թրի տակն, ու առ ու գնա—:

Էկաւ ու բարիմ էրեց տղեկներուն քեռի Թորոսն:

Ցռանավէգին ասեց՝ Երթանք ընցնինք ուր թրի տակն ու երթանք: Մըկէլ երկուսէ հմալ ասեցին: Ըմա Դաւիթն ասեց.

—Կըսպանեն թող լսօր սպանէ, որ խըլլս ասեն ձիժ մ՚սպանեց. ես ընմէրայ թրի տակով չըմ ընցնայ. հըմալ կ՚եմէ որ վայ ես մեծնամ սուր չքաշեմ իւր վրէն—:

Ուր առու քեռի Թորոս զըղանք բօփ էրեց որ տանի ընցու թրի տակով. Դաւիթ զընկրաւ ու կայնաւ, ու չերթայ թրի տակով. քեռի Թորոս բռնեց զԴաւիթի պառէկն ու հրտեց որ ընցնայ թրի տակով. Դաւիթ չգնաց թրի տակով, կըշտով ընցաւ, ուր ձոչ բոմ քխաւ ի Ջարղու քար՝ կրակ էլաւ մօտէն. յետոյ Մսրամէլիք տեսաւ, շատ վախեցաւ, ու ասեց.

—Իզա պզտիկ է էսքան է, որ մեծցաւ ի՞նչ տ՚եղնի: Թէ որ ինձի զալալ մի եղնի՝ բըլըռ մօտէն է—:

Քեռի Թորոս առաւ զձմեր ու էկաւ ի Սասուն. Ցռանավէգին գրեց բերղի մէջ ուր սպասու տեղ. ու Դաւիթ՝ որ ըմնաւ պստիկն էր, գրեց հօրթերու առէջ:

## Դ.

Դաւիթն էր, որ կօպալ մի կը զարկէր հորթերուն, քառասուն հորթիկը հետ կը գլորտուէր։

Օրերուց օրմ՝ լէ քշեց զ՛հորթեր հանեց սարի գլուխ. տեսաւ որ հորթրածի մէկ լէ ուր հորթերուն կը ֆրֆրտէր ու ընդիէն էկաւ։ Դաւիթն ասեց.

—Օ՛ մարդ. դու ընձի կը ֆրֆրտէս. դու կայնի որ ես խզամ կօպալ մի զարկեմ որ դու սատկես—։

Ըղի ասեց Դաւիթին.

—Գլխուդ արեւուդ մեռնիմ. ես լէ քո պապու գեղի հորթրածն եմ. ու խղա՝ ըմիկայ հորթերն են—։

Դաւիթն ասեց.

—Էլա խաա, ես հորթերու վախս չըմ գիտնայ. զիմ հորթեր լէ դու պահէ. յիրոր երթլու վախս կ՛եղնի. տուր խմ առէջ, տանիմ—։

Ու ըղ օր առեց զ՛հորթեր վախսի հետ ու էկաւ 'ի գեղ։ Խնդացաւ քեռի Թորոս ու ասեց.

—Որդի, հըմկայ Ֆատալով եղի. ըմին որ վախսի հետ արի գնա—։

Դաւիթն ասեց.

—Քեռի, խմ հընար չէր էղ. ընձի աղբէր մի բռներ եմ. ըմն որ տի պահէ զիմ հորթեր. բաղիր աղէկ տը տի-րապըրեմ—։

Օրերուց մէկ ուր ընկեր անգըցաւ. Դաւիթ չատ մխ-րաւորաւ։ Ըղ տղէն լէ, մ՛ասի, ըղնեց գեղ ցասմանն ժամ է, պատարագ է, տղէն էղ առոլ անգցեր է. էկաւ։ Դաւիթ ըղրան ասեց.

—Ըսօր դու խմ ձեռնէն ի՛մալ պտի աղատուխս—։
Տղէն ասեց.

—Դաւիթ, գլխուդ արեւուդ մեռնիմ. ես քո տ՛հուն հեղմ՝ լէ չկայնայ, ու ըղն ցասման ձայնից գղալմ՝ լէ չկե-րայ, քշեցի զ՛հորթերն ու էկայ. ընուր առոլ քիչմ՝ ան-ցցեր եմ—։

Դաւիթն ասեց.

Դու նստի հոդս, ես երթամ քե ճաշ առնեմ ի գամ:

Դրեց զլօպալ վըր թեւին ու գնաց. զարկեց ինկաւ 'ի ալմին, տեսաւ որ գնէրիսէք զըմէն հանած են դրած 'ի կալ. երէցներ էկած են կ'օրհնեն: Գնաց զլօպալնի էձգեց 'ի չորս կանթէն պղինձ մի՝ հըմալ լեցուկ, ու դրեց վըր թեւին: Զարմցան ըդ երէցներ ու ըդ մարդեր որ հոդ էն: Մարդու մէկ կանչեց թէ՝

—Ըդի ախըր զպղինձ տարա՛ւ հէ՛:

Երէց կանչեց.

—Բո Աստծու սէր, ձէն մ'էնե. ըդի Սասնու ծռերուցըն է. կը դառնայ զմըզի ջարդ ու բուրդ կ'ենէ. զուր գլուխն ուտի, թող տանի—:

Դաւիթ լէ առեց զպղինձ լեցուկ ճաշով, էկաւ մօտ ուր ինկեր: Նստեր է ինկեր ու կ'իլա՛յ:

—Հէ, հէ, ասեց. գիտնամ դու յորի կ'իլաս, զճաշ բերեր եմ, զաղ ու զեղ չըմ բերերի. էն ապով կ'իլաս: Կե հըմկայ զճաշ. խըխկուն գնա զեղ ու զաղ կե վրէն—:

Ասեց տղէն.

—Դաւիթ, գլխուդ արևուդ մեռնիմ: Զեղ ու զաղն ես ինչ էնեմ: Դեռ էլան քառսուն հարամի (խարամանի) գե, զարկեցին զմըր հորթեր տարան, ու գացին—:

Դաւիթն ասեց.

—Դու հոսա կեցի. խըս տեղու հորթերուն իչէ. ես կ'երթամ զմըկըլտոնք կը դարձում—:

Ու ինկաւ հորթերու ետեւն ու գնաց, առեց զըռէջք գնաց էրի մի դուռ, ու կայնաւ: Դաւիթ հոգի մէկ ձէնով բռռաց. սարսափ թափաւ վըր ըդ գեւերուն. (Իմալ որ Բըխտասի ձէն ինկաւ զժոխք ու սատանէք խըռովան): Էդ հրամիններու մեծ յերոր լսեց, ասեց,

—Գեղի, ըդի Դաւիթ՝ Մսրամելիքի տղէն է. եկէք խզմաք էրէք որ չսպանէ զմըզի—:

Մէկ մէկ գուրս ելան, ու Դաւիթ մէկ մէկ կօպալ զարկեց, ու քառասունի գլուխ լէ գնաց, ու ջանդակ մնաց. գլուխ քառասունի ականջէ կտրեց ու տարաւ էրի մօտ քարու մի տակ պահեց։ Դաւիթ զկօպալ ողորցուց ՚ի վրա, ու մտաւ էրի մէջ, տեսաւ որ զօլօն մի ոսկի է, մէկ արծաթ. աշխըրքի մալ ու սօլխաթ. քանի որ ուր ապայ մեռեր է, ըղունք աւերութեն էրած են, ու լցած էղ էր։ Դուռ մի բացեց, որ ձիու քուռակ մի կապուկ էր յինք։ Ինք ու յինք դուշուրմիշ եղաւ, ու ասեց.— Թեռի, խըա մալ ըմէն քըզի, ու խըա ջանավար ընձի. Կ'խոսաս տուր, չըս խօսա՝ գքըզի լէ կը հասում խըունց—։

Հեղմ՝ լէ ինք ուր գլխուն կ'ասէ.

--Լաօ, մալ լէ քըզի, ջանավար լէ քըզի. ես ի՞նչ կ'էնեմ—։ Դարձաւ ինչեց որ քառասուն կանթէն պղինձ մի զրուկ էր օճախի վրէն, քառասուն հորթիկ լէ մէջ։ Զկօպալ կը մտու կանթներ ու կը վերցու. ջուր կը զարտկէ ու հորթերու ոտքեր լէ կը լըլայ մէջ. կը չալկէ ու կ'երթայ։ Առ ու էկաւ մօտ ու ըսկեր. առեց պընկեր ու զխնացած հորթեր ու դարձաւ էկաւ ՚ի ողմիկ. կանչեց զհորթերու տէրտանք ու ըերեց, ասեց.

—Թէ որ խմ աղբօր ձանկ մի հախ կարէք, վա՛յ վալլէր ձըր ջանին։ Զըղտ պղինձ լէ ծախէք. թող եղնի ձըր հորթերու տեղ—։

Ինք լէ ջոկեց զուր հորթեր, ու կէսօրին էկաւ տուն քեռի Թորոսին ասեց.

--Բէլէ, սա քանդըմ ջորի, ու երթանք մալ բերենք որ զու լէ ուտես ու քու եօթը պորտ լէ. յար յի՞ր ես տ'եղնիմ հորթըած։

Ու առան զջորէք ու գացին։ Գացին մօտեցան էրին. քեռի Թորոս տեսաւ որ գլեխ ըսծած են էրի վրա, ու-ռա՛ծ են. եղած ամէկ քընց Գող ըլուր։ Քեռի Թորոս

վախնալուն պըլծուց գուր ջորին մըկել ջորեցներուց, ու փախաւ:

Դաւիթն ասեց.

—Տնաւե՛ր, ես ըղունց սաղերուց չըմ փախի, ղու ըղունց մեռելներուց հօրի՞ կը փախիս. ասեց, թէ չըս աւատայ, ղարձի քո եաեւ, պալի տակ իչէ, ըըմ՛ընաւ ախանջներ ըլեր եմ հողի—:

Քեռի Թորոս տեսաւ, ու ղարձաւ տա գջորեստան ու մտաւ յէր, ինչ կէր չկէր ժողվեցին, զբեռներ բռնեցին։

Ասեց.

—Քեռի Թորոս, խըզա մալ ըմէն քըղի, ու խըզա ջանավար ընձի. կ'խօսա՛ տուր. չըս խօսա՛ զքըղի լէ կը հասուեմ խըղունց—:

Ասեց.

—Լաօ, մալ լէ քըղի, ու ջանավար լէ քըղի. ես ի՞նչ կ'ընիմ—: Թախրիր առեց քեռու բերնից, ու էլաւ հեծաւ գքուսակ, խառ կ'խօսայ, մէկ կ'երթայ ղինա, մէկ կ'երթայ ղիտայ: (Քուսակ չէ. դիլ իլան բարիթ օլմազ քուսակի զօրութեն):

Հըմըա մալով բամալով էկան 'ի Սասուն: Դաւիթ գտաւ աղէկ բաղէ մի, ու ընկաւ արտեր եէնեբ կ'էնէր: Էլ հորթեր թորկեց:

Օրերուց մէկ եկաւ աղքատի մ' արտի հանդըստաւ, որ եօթ նըշխ քուլչաք ունի, ու եօթ կորի կորեկ, ղչորան աւրեց. մնաց երեք: Մէկ եկաւ ջուար բերեց աղքատ հալւորուն, ասեց.

—Ես տուն աւրի. էլի գնա արտուղ եկեսն. գիշեր կ'իգայ զէն երեք կորին լէ կ'աւրէ—:

Հալւորն էր, առաւտուն ըն գլխուց չուր աղօթք կ'էնէ. ու կ'եղնայ կ'իչէ զարտն աւրեր է: Մէկէլ կը տեսնայ որ գաւիթ՝ բաղէն 'ի ձեռք, հեծուկ գքուրակին, է-

կան ։ Հայւորն ըղ տեղ անիծեց Դաւիթին, ու ասեց.

—Դու Աստըծուց ըսկի չե՞ս վախնայ. դու վըր իմ կռնակի՞ն ես կարիճ. եօթ ըրֆս ունիմ, եօթ կորի կռնակ չորան ակերեր ես, մանցեր է երեք, կարիճ ես, գնա գքո պապու մուլքն առ, որ Մծմախայ գլխէն կ'երթայ հար ի Սեղանասարու գօտին՝ զավթեր է Մսրամէլիք, ու կ'ուտէ. գնա զէն առ ։ Վըր ընձի՞ ես կարիճ — ։

Ասեց.

—Հայւոր, մ'անիծի ընձիկ. առ բուռ մի ունլի՝ գքո իդարեն էրէ — ։ Ու զարկեց գըրաղէն ։

Խօջայ Դաւիթն էր, ասեց.

—Քեռի Թորոս, էլի գիմ պապու կուրզն ու ճէմալ տուր ընձի, որ կ'երթամ կռիւ. գիմ պապու մուլք խըլն կ'ուտեն, դուք ընձի չե՞ք ասե — ։

Էչաւ քեռի Թորոս գնաց մօտ Ցամոնլէզլին, ուզեց զուր պապու կուրզն ու ճէմալ ։

Ցամոնլէզլին չտուեց ։ Հեղմ՝ լէ զարձուց, ու ասեց.

—Կ'խոսամ՝ տուր, չես խոսա՝ կ'իզամ կը մաքմնեմ, գլուխդ կ'երթայ, ջանդակդ կը մնայ — ։

Ցեամոնլէզլին վախուն տուեց ուր պապու կուրզ ու ճէմալ, ու քեռի Թորոս բերեց տուեց Դաւիթին ։

Ըդ գիշեր Դաւիթ քնաւ, տեսաւ երազ. առաւ քառսուն երինջ ու գնաց վըր սըբ բանձրիկ Մարաթուկայ. մատղեց զերինջներն ու լոլզցաւ մըջ արունին. չատ լաց ու աղաչաց Աստծու երեսն ու վե. իջաւ Աստծու ուրան սուրբ Նշան մի ու սանդր մի. (ու հիմկայ լէ ըն սուրբ Նշան՝ հանդէ 'ի գաւառ Զօրկայ տուն.) համբուրեց զսուրբ Նշան, դրեց աջ ծոցքի բարաձ. ու սանդր լէ դրեց ձախ ծոցք ։

## Ե.

Ըդ Մսրամէլիք լսեց որ Սասմէլիքի տղէն հասեր է, ու էլի կ'իզայ ուր մրէն կոխ, ուրան քառաթից լէ Խօլ Բաճին էլաւ առաւ զուր ազգար, էկաւ որ տի գէր 'ի Մարաթուկ, Դաւիթի մրէն. տեսաւ որ կընկտիք կայնած են ձամբու մրէն, ասեց ըղուեց.

—Ջրղի պար առէք, խաղցէք. չուր 'ի ես իգամ—: Ասեցին.

—Մենք զի՞նչ առնենք ու խաղանք. չէ չը՞նք գիտայ թէ զի՞նչ առնենք—:

Խօլ Բաճին ուրանց ասեց.

«Կարճ կընկտիք էրկանք աղան,
«Երկէն կընկտիք զուզտեր բառնան.
«Մեր Խօլ Բաճին գացեր Սասուն 'ի բան,
«Մուղալ եղներ բերէ լըծան.
«Ձկարմիր կովեր բերէ կըթան,
«Փարուն բօլ կը չինենք եղ ու չորթան»:

Մէկլէ կ'իջէ որ կնկտիք ուրանց զըղի կ'առնեն ու կը խաղան։ Ըղոնք լէ կ'առնեն զաազար կ'իգան ու կը լը-ցուին Մարաթուկայ բակ:

Ըդ Մարաթուկայ երեցու աղջկան լէ աչք կայ Դաւի-թի հետ. երեցու աղջիկ էկաւ խաբար բերեց Դաւիթին, ու ասեց.

—Դաւիթ, խուրբան գլխուդ ու արեւուդ. էլի տես ինչ խըտըր ազգար է եկե բակի մէջ, ամէթի ազգար են—: Երեցու աղջիկն ասեց, գնաց նստեւանց, ու զաան դըր-կափակ քաշեց:

Դաւիթ թըռաւ էլաւ, ու ասեց՝ «Ես հաց զինի,

տէր կենդանի» . ու լռնեց զաստրի մարդերու հիման զգլխներ, մարմինեց, ջանեյակ գնաց պատնից դուրս, ու գլուխ մեաց բակին մէջ։ Բռնեց զԽօլ բաշին լէ, քակեց զակռէք ու չարեց 'ի ճակատ. ու զմզրաղ լէ երեց քընց չան խատուան, կախեց վզից, ու ասեց.

—Դէ՛ գնա ջուաբ տար Մսրամելիքին. ըսրան մարդ կայ՝ թըղ գամէ, չուրի ևս խզամ—։

Խօլ բաշին հեղմ՛ լէ էկաւ մէջ լըղ կընկառնեց. հեղմ՛ լէ կ՛առէն ու կը խաղէն։ Կնկան մէկն ասեց.

—«Խօլ բաշի ջան, Խօլ բաշի.
«Իդա դիէն գացիր քընց գէլ գաղան,
«Ընդիէն էկար քընց շուն վազան.
«Մզրայըդ է վիզդ քընց չան խատուան,
«Բերանդ է բաց քընց պատուհան.
«Բերնէդ կ'երթայ քընց չոբկի տըկի թան,
«Ճանճեր վըրէն կապած զարուան»—։

Խօլ բաշին ասեց.

—«Տօ շընացած, դէլ անզգամ,
«Ես գիցայ թէ Սասուն դաշտ ու դուրան էր.
«Զը գիցայ թէ քար ու քար ու կապան էր.
«Էն ճըժեր որ նաս են էլած դիւանականն էն։
«Ուրանց նետ կայ քընց ձիթիւղցի գերան,
«Որ կը զարկեն, բերան կը բացուէր քընց պատու-
հան.
«Էն մանկտիք որ նետս էր, ժողվան լցուան 'ի Խա-
րաման։
«Գարուն որ Ջուրն էկաւ, կը ժողվէ բերէ ճոճ ու
ըլոր արմաղան,
«Էն ժամանակ ձըղի բոլ շինէք եղ ու չորթան»—։

Իրա անգամ Դաւիթ էլաւ խոռս էրեց գնաց Մսրա-մէլիքի վրէն. էկաւ որ՝ անապին ասպար ժողվեր են, ու նստեր Սեղանադրու զօտին։ Դաւիթ ասեց.

—Ուխտ եղնի, չուրի ես կանանց կարմիր չասրի տակ եօթն օր բըրըձ քլաւ չուտեմ, կոխւ չէնեմ—։

Էս անգամ ըղ տեղէն Դաւիթ զարկեց դնաց արեւ-պտող դիէն Ծրբլու էկաւ, էկաւ ու չասրի դէմ կայնաւ։ Ցերոր ըղ ասպար տեսաւ զըղ ձիաւոր, զանոնք քանեց ու վախեցաւ։ Մէլիք հարցուց.

—Դու ի՞նչ մարդ ես—։

Ասեց Դաւիթ.

—Ես արեւպտող թագաւորի տղէն եմ. էկեր եմ ձըզի յօղ—։

Մէլիք չասրը զարկեց. եօթն օր հրամրաց հաց կերան. վըր ուռթնին էլաւ զուր ձին հեծաւ, երկու մէյդանը գնաց էկաւ, ասեց.

—Էյի՛, որ ես էկեր եմ քո վրէն կոխւ. յար յէր դու ուտես զիմ պապու մուլք—։

Կոխւ կցեցին։ Դաւիթ կանչեց «հացն ու գինին, տէր կենդանին»։

Աղա՛, քեռի Թորոս յսեր է գըղանոց կոխւ, քաշեր է մէկ քարղի ծառ, դրեր է վըր քիղին, ու էկաւ։ Ինք կայներ է ձուրու դլխուն, ու ըղոնք ձուրու մէջ կոխւ կ՚էնեն։ Որն որ կը փախի վեր կ՚ելնէ. Դաւիթ կը բօռայ, —Քեռի Թորոս, դու ձորէ, ես ձորթիփեմ—։

Ասպար կայնան ու դաւա էրեցին թէ՝ «Լազըմ է որ մինակ դուք երկուս կ՚ըռուէք, որն որ զօր կ՚եղնի, թող կըռիւ էնոր եղնի»։

Էն կ՚ասէ՝ դու նստի ես զարկեմ. էն կ՚ասէ՝ դու։ Ծուրուս կապեցին որ պտտիկ աղբէր Դաւիթ նստի։

Դաւիթ քաշեց զխալխան ՚ի գլուխ. քանեց զառըր

Նշան խալխընի տակ, ու նստաւ։ Մարամշլիք երեք սհարի ճամբայ մնկնաւ, ու ինչտապով էկաւ կուրզ մի զարկեց ու ասեց.— «Հող եմ, հող դառնամ»—։

Դաւիթն ասեց.

—Հաւատամ խաչտավանին բանձրին Մարաթուկ սուրբ Նշան, ես հըմալ եմ՝ քընց կանանչ կարմիր չասրի տակ բրընձ փլաւ կ՚ուտեմ»—։

Դաւիթ լէ իրեք անգամ՝ — «Հաւատամ խաչտավանին» ասեց։

Իգա անգամ զօր եկաւ նստեցուն Մարամշլիքին։ Մարամշլիք հընգռաւ, կայնաւ, չըր նստի։ Ասզար մնգըրեցին զինք։ Էկաւ գլխալխան վըր գլխուն ու նստաւ։ Իգա անգամ Մարամշլիքի մամ մնգըրեց ու ասեց.

—Դաւիթ, ղուրբան գլխուդ արեւուդ. չէ՞ եդ լէ քո աղբէրն է. մը՛ զարկի, խեղճ է—.

Ասեց Դաւիթ.

—Հէ՛յ անզգամ, չուրի հըմկայ որ էդ կը զարկէր, հօրի՞ չըր ասի՝ քո աղբերն է։ Բըլէ, լը ուա թըղ եղնի։ Մէկ դըրբ թըղ եղնի Աստծու խաթըր. մէկ լէ՝ քու խաթըր. ըմա զիմ եսի դըրբ կը զարկեմ, ես կը մեռնի, ես կը մնայ—։

Գնաց էկաւ կուրզ մի զարկեց. եօթ գազ ի գետին տարաւ զՄորամշլիք։ Ու գնաց զալքեց զՄըսըր, ու նստաւ թագաւորի թախտ։

Ըղի հող մնաց։

Զ.

Գաղզուանու Ամիրին աղջիկ մի կայ, անուն Խանդութ խանըմ. լըլի լսեց Դաւիթի զօրեղութենն. նամե տուեց աշողի մ՚ու ասեց.

—Գնա զիմ գովասանք էրա Դաւիթին. բըլբըլ եգոյ հողա, զիրար առնենք—։

վախենալուն ալըրծուց գուր ջորին մըկել ջորեցներուց, ու փախաւ։

Պուլիթն ասեց.

—Տնաւե՛ր, ես ըղունց սաղերուց չըմ փախի, ղու ըղունց մեռլներուց հօրի՞ կը փախիս. ասեց, թէ չըս աւատայ, զարձի քո ետեւ, պայի տակ իչէ, ըրմընու ականջներ ըլեր եմ հոգի—։

Բեռի Թորոս ետեաւ, ու զարձաւ աս պջորեստանն ու մտաւ յէր, ինչ կէր չկէր ժողվեցին, զբեռներ բռնեցին։

Ասեց.

—Բեռի Թորոս, խըս մալ ըմէն քըղի, ու խըս ջանավար ընձի. կ'խոսս՝ տուր. չըս խոսս՝ գքըղի լէ կը հասում խըղունց—։

Ասեց.

—Լաօ, մալ լէ քըղի, ու ջանավար լէ քըղի. ես ի՞նչ կ'ընիմ—։ Թախրիր առեց քեռու բերնէց, ու էլաւ հեծաւ զքուռակ, խառ կ'խայ, մէկ կ'երթայ զինա, մէկ կ'երթայ զխայ։ (Քուռակ չէ. դիլ իլան բարիթ օլմազ քուռակի զօրութեն)։

Հըմըս մալով թամալով էկան 'ի Սասուն։ Պուլիթ զտաւ աղէկ բազէ մի, ու ընկաւ արտեր նէնէր կ'ընէր։ Էլ հորթեր թորկեց։

Օրերուց մէկ եկաւ աղքատի մ' արտի հանդըպաւ, որ եօթ նըֆս քուլֆաթ ունի, ու եօթ կորի կորեկ, զչորան աւրեց. մնաց երեք։ Մէկ եկաւ ջուար բերեց աղքատ հալւորուն, ասեց.

—Բո տուն աւրի. էլի գնա արտուդ երեսն. զիչեր կ'իգայ զէն երեք կորին լէ կ'աւրէ—։

Հալւորն էր, տաւատուն ըն զլխուց չըր աղօթք կ'ընէ. ու կ'եկնայ կ'իչէ զարտն աւրեր է։ Մէկէլ կը տեսնայ որ զաւիթ՝ բազէն 'ի ձեռք, հեծուկ զքուռակն, է-

կան։ Հալւորն ըղ տեղ անիծեց Դաւիթին, ու ասեց.

—Դու Սասրծուց ըսկի չը՛ս վախենայ. դու վըր իմ կորեկի՞ն ես կարիճ. եօթ Ըրֆս ունիմ, եօթ կորի կորեկ չորան աւերեր ես, մանցեր է երեք, Կարիճ ես, գնա զքո պապու մուլքն առ, որ Ծծմակայ գլխէն կ'երթայ հար ի Սեղանատրու գոտին՝ զավքեր է Մարամէլիք, ու կ'ուտէ. գնա զէն առ։ Վըր ինձի՞ ես կարիճ—։

Ասեց.

—Հալւոր, մ'անիծի ընձիկ. առ բուռ մի ոսկի. զքո իղարէն էրէ—։ Ու զարկեց գրպանէն։

Խօջայ Դաւիթն էր, ասեց.

—Քեռի Թորոս, էլի զիմ պապու կուրզն ու ֆէմալ տուր ընձի, որ կ'երթամ կոխւ. զիմ պապու մուլք խըլխ կ'ուտեն, դուք ընձի չը՛ք տա—։

Էլաւ քեռի Թորոս գնաց մօտ Ցամանլէգլին, ուզեց զուր պապու կուրզն ու ֆէմալ։

Ցամանլէգլին չտուեց։ Հերի՛ ըէ դարձուց, ու ասեց.

—Կ'խաւա՝ տուր, չըս խաւ՝ կ'իզամ կը մարմնեմ, գլուխդ կ'երթայ, ջանդակդ կը մնայ—։

Ցեմանլէգլին վախուն տուեց ուր պապու կուրզ ու ֆէմալ, ու քեռի Թորոս բերեց տուեց Դաւիթին։

Ըղ գիշեր Դաւիթ քնաւ, անուշ երազ. առաւ քառասուն երինջ ու գնաց վըր սըր բանձրիկ Մարաթուկայ. մատղեց զերինջներն ու լողցաւ մէջ արուննին. չատ լաց ու աղաչաց Աստծու երեսն ու վեր. ինչաւ Աստծու ուրան սուրբ Նշան մի ու սանդր մի. (ու հիմկայ ըէ ըն սուրբ Նշան՝ հանդէ 'ի գաւառ Զօրկայ տուն.) համբուրեց զսուրբ Նշան, դրեց աջ ծոցքի բարաճ. ու սանդր ըէ դրեց ձախ ծոցք։

## Ե.

Էդ Մօրամէջլիք լսեց որ Աքամէջլիքի ողէն հասեր է, ու էլի կ՚իդայ ուր մրէն կոխւ, ուրան քառասնից լէ Խօլ բաշին էլաւ առաւ զուր ադգար, էկաւ որ տի գէր 'ի Մարաթուկ, Դաւիթի մրէն. տեսաւ որ կընկտիք կայնած են ձամբու մրէն, ասեց ըղունց.

—Ջրգի սար ասէք, խաղցէք. չուր 'ի ես իգամ—:
Ասեցին.

—Մենք գի՞նչ ասենք ու խաղանք. չէ չը՞նք գիտայ թէ գի՞նչ ասենք—:

Խօլ բաշին ուրանց ասեց.

«Կարձ կընկտիք էրկանք աղան,
«Երկէն կընկտիք զուզուեր բառնան.
«Մեր Խօլ բաշին գացեր Սասուն 'ի բան,
«Մուղալ եզներ բերէ լըծան.
«Ջկարմիր կովեր բերէ կըթան,
«Գարուն բօլ կը չինենք եղ ու չորթան»:

Մէկըէ կ՚իջէ որ կնկտիք ուրանց զըղի կ՚ասեն ու կը խաղան: Ըդոնք լէ կ՚առնեն զադար կ՚իդան ու կը լըցուին Մարաթուկայ բակ:

Էդ Մարաթուկայ երիցու աղջկան լէ աչք կայ Դաւիթի հետ. երիցու աղջիկ էկաւ խաբար բերեց Դաւիթին, ու ասեց.

—Դաւիթ, խուրբան գլխուդ ու արևուդ. էլի սեւ ինչ խրտըր ադգար է եկե բակի մէջ, անթի ադգար են—: Երիցու աղջիկն ասեց, գնաց եկեւանց, ու ղրան դըրկափակ քաշեց:

Դաւիթ թըռաւ էլաւ, ու ասեց՝ «Եա հաց գինի,

տէր կենդանի»․ ու լսեց զաոգրի մարդերու հրման զգլխներ, մարմինց, ջանդակ գնաց պատնից դուրս, ու գլուխ մնաց բակին մէջ։ Բռնեց զԽօլ բաշին լէ, քաշեց զախոռէք ու չարեց 'ի ճամբա․ ու զմզրաղ լէ երեց քընց չան խառան, կախեց մզից, ու ասեց․

—Դէ՛ գնա ջուաբ տար Մարամէլիքին․ ուրան մարդ կայ՝ թող գամէ, չուրի ես խգամ—։

Խօլ բաշին հեղմ' լէ էկաւ մէջ լող կընկոտնց․ հեղմ' լէ կ'ասէն ու կը խաղէն։ Կնկան մէկն ասեց․

—«Խօլ բաշի ջան, Խօլ բաշի․
«Իդա դիէն դացիր քընց դէլ դաղան,
«Ընդիէն էկար քընց չուն վադան․
«Մզրադդ է միդդ քընց չան խառան,
«Բերանդ է բաց քընց պատուհան․
«Բերնէդ կ'երթայ քընց չոբկի ոռկի թան,
«Ծամներ մըրէն կապած դարուան»—։

Խօլ բաշին ասեց․

—«Տօ չընացած, դէլ անդգամ,
«Ես գիցայ թէ Սասուն դաշտ ու դուրան էր․
«Չը գիցայ թէ քար ու քար ու կապան էր․
«Էն ճըմեր որ նաս են էլած դիւանական էն։
«Ուրանց նետ կայ քընց ձիթխըցի գերան,
«Որ կը զարկեն, բերան կը բացուէր քընց պատու-
հան․
«Էն մանկտիք որ հետս էր, ժողան լցուան 'ի Խա-
բաման։
«Փարուն որ ջուրն էլաւ, կը ժողվէ բերէ ծոծ ու
բոլոր արմաղան,
«Էն ժամանակ ձըղի բօլ չինէք եղ ու չորթան»—։

Իրա անգամ Դաւիթ էլաւ խոյս էրեց գնաց Մսրա-մէլիքի վրէն. էկաւ որ՝ ա՜ռաջին աղբար ժօվեր են, ու Նասեր Սեդանապրու գօտին։ Դաւիթ ասեց.

—Ուխտ եղնի, չուրի ես կռնանչ կարմիր չատրի տակ եօթն օր բըրինձ բլաւ չուտեմ, կռիւ չէնեմ—։

Էս անգամ էլ տեղէն Դաւիթ զարկեց դնաց արեւ-պտոց դիէն Ցրթլաւ էկաւ, էկաւ ու չատրի դէմ կայնաւ։ Ցերոր էլ աղբր տեսաւ զըդ ձիաւոր, զանդայ բռնեց ու վախեցաւ։ Մէլիք հարցուց.

—Դու ինչ մարդ ես—։

Ասեց Դաւիթ.

—Ես արեւպտոց թագաւորի տղէն եմ. էկեր եմ ձըգի յօղ—։

Մէլիք չատըր զարկեց. եօթն օր հրաւիրաց հաց կերան. վըր ութնին կլաւ զուր ձին հեծաւ, եւկու մէյդան գնաց էկաւ, ասեց.

—Էյի՛, որ ես էկեր եմ քու վրէն կռիւ. յար յէր զու ուտես զիմ պապու մուլք—։

Կռիւ կցեցին։ Դաւիթ կանչեց «հացն ու գինին, տէր կենդանին»։

Աղա՛, քեռի Թորոս յսեր է զըդունեց կռիւ, քաշեր է մէկ բարդի ծառ, դրեր է վըր քիթին, ու էկաւ։ Ինք կայներ է ձուրու գլխուն, ու ըղունք ձուրու մէջ կռիւ կ'էնեն։ Որն որ կը փախի վեր կ'ելնէ. Դաւիթ կը բռռայ, —Քեռի Թորոս, դու ձորէ, ես ձորթիփեմ—։

Սազար կայնան ու դաւա էրեցին թէ՝ «Լազըմ է որ մինակ դուք եւկուս կ'ռռուէք, որն որ զօր կ'եղնի, թող կըռիւ էնոր եղնի»։

Էն կ'ասէ՝ դու Նասի ես զարկեմ. էն կ'ասէ՝ դու։ Ծուրուս կապեցին որ պտոյտ տըքէր Դաւիթ Նասի։

Դաւիթ քաշեց գխայխան 'ի գլուխ. բռնեց դուրբ

Նըշան խալխընի տակ, ու նստաւ։ Մսրամէլիք երեք սհաթի ճամբայ մնկնաւ, ու իշտապով էկաւ կուրզ մի զարկեց ու ասեց.— «Հող էս, հող դառնաս»—։

Դաւիթն ասեց.

—Հաւատամ խոստովանիմ քանձրիկ Մարաթուկ սուրբ Նշան, ես հըմաղ եմ՝ քընց կանանչ կարմիր չատրի տակ բըլնած փլաւ կ'ուտեմ»—։

Դաւիթ լէ իրեք անգամ՝ — «Հաւատամ խոստովանիմ» ասեց։

Իղա անգամ զօր եկաւ նստեղուն Մսրամէլիքին։ Մսրամէլիք հընգաւ, կայնաւ, չըր նստի։ Ասգար մեղրեցին զինք։ Էկաւ զխալխան վըր զլխուն ու նստաւ։ Իղա անգամ Մսրամէլիքի մամ մեղրեց ու ասեց.

—Դաւիթ, ղուրբան գլխուդ արեւուդ. չէ՝ եդ լէ քո ալրէրն է. մը՛ զարկի, խեղճ է—.

Ասեց Դաւիթ.

—Հէ՛յ անզգամ, չուրի հըմիկայ որ էդ կը զարկէր, հօրի չըր ասի՝ քո ալբերն է։ Բըլէ, ըղ աւա թըղ եղնի։ Մէկ դըրբ թըղ եղնի Աստծու խաթըր. մէկ լէ՝ քու խաթըր. ըմա զիմ եսի դըրբ կը զարկեմ, եա կը մեռնի, եա կը մնայ—։

Գնաց էկաւ կուրզ մի զարկեց. եօթ գազ ի գետին տարաւ զՄսրամէլիք։ Ու գնաց զալբեց զՄըսըր, ու նստաւ թագաւորի թախտ։

Ըղի հող մնաց։

Զ.

Գաղզուանաւ Ամիրին աղջիկ մի կայ, անուն Խանդութ խանըմ. ըղի լսեց Դաւիթի զօրեղութեն. հախ տուեց աշողի մ'ու ասեց.

—Գնա զիմ գովասանք էրա Դաւիթին. բըլէըմ իգայ հողա, զիրար առնենք—։

*Աշողն էր եկաւ գնաց ի Սասուն, գիտէր խօ՛յ Դաւիթն ի Սասուն էր։ Էկաւ ու էկաւ Ցամըլէգու բերդ, գիտէր թը Դաւիթն է ընտեղ նստուկ։ Նստաւ* դամ *էրեց Ցամը-ըլէգուն։ Ցամըլէգին ասեց.*

*—Գիգի՛, եկէք զըղի ծեծէք էրէք ղուրս. էղի էկեր է զիմ աղբէր խաբէ տանի—։*

*Ծեծեցին ու տարան ձօր մի զըղ աշող վըր ճամբուն թալեցին։ Իրիկուան հօտըղներ զուրանց եզներ հեծած են կ՛իգան գեղ. մէկի եզ խրտաւ, հօտաղ պատաւ վրաւէն. ըլըղան գտան զաշող։*

*Աշող լաց ու աղաչաց ըդ հօտըղներուց. ու հարցուց.*

*—Ըդ ո՛րն է նստուկ մէջ էդա բերդին—*

*Հօտըղներ ասեցին թէ՝— Ըդի Ցամըլէգին է. Դաւիթ հանդ է Մըսըր—։*

*Եկաւ աշող ոտքի մի տուեց հօտըղներուն. հօտըղներ զօմեցին զուր* դամբուռի *կտորտանք տուեցին ուրան ճամբէն ըլըցուցին, ու աշող դէմ էրեց ի Մըսըր. գնաց զ*խանըմի հիմարն *էրեց Դաւիթին. Դաւիթ չատ* բէզգէշ *—բաշխիչ— տուեց ըդ աշողին. ու ասեց.*

*—Դու գնա, ես կ՛իգամ—։*

*Աշողն էկաւ Խանդուդ* խանըմին *ասեց։*

*Դաւիթ լէ Մըսրայ էկաւ չիտակ էկաւ ի Սասուն։ Սասնու էկաւ հասաւ ի Ծըծմակայ քիթ, տեսաւ որ զութան մի վըր ճամբուն էր, արծկեց զտաւար, էրեց զէն, բռնեց* զզընջիլ, *հեծաւ զձին, խոս գիէն կը քաշէր զզութան կը հանէր Սարու գլ՛ոխ, ու ընդիէն քաշէր բերեր ցած, ու ըդ հըմալ Սեւ սարու գլուխը վե գլխվըրաւ էկաւ վըր Մառնիկ գեղի հնին։ Եկաւ տեսաւ որ գըմէշ մի պըծեր է էկե ճամբու վրէն ու թըլըքեր է։ Ըղուր Թրիք կը տեսնայ, կ՛ասէ.*

—Ընծի թ՚որ զաւալ մ՚եղնի՝ ըղուր թրքօղիցն է. չ՚եղնի՝ ըղուր թրքօղիցն է—։

Տեսաւ գըմէշ մի տըղլի մէջէն էլաւ։ Դաւիթ՝ որ հըմլայ բան ըսկի չըր տեսէ, քաշեց գլուրզն ու կայնաւ որ գըմշուն զարկէր։Մէկ հօտայ ընդիէն էլաւ. ու գըմշուն կը ֆրֆրէր։ Դաւիթ գիցաւ խըռ՚յ ուրան կը ֆրֆրէ, սաեց.

—Լաօ, ես քեզ ի՞նչ եմ էրե, որ ընծի կը ֆրֆրես—։

Հօտայն սաեց.

—Հըդ քըղի ո՞րն է, տըղէր գու Սասնու ծո՞ւռն ես. գու տունեա չըս տեսեր ես. ես իմ գըմշուն կ՚ասեմ—։

Սաեց.

—Լաօ, հօրմ կը ըրգես, ամօ՞թ բան է. ես հըմլայ բան չըմ տեսե. ընդուր ինէ չառ կա՞յ ձըր եղկիր—։

Հօտայն սաեց.— Արի քիզի նշանց տամ—։

Դացին Աւզուտայ դաշտ, որ ընտեղ գութան մի գոմըշներով լծեր են ու կը քշեն։ Էլաւ տեսաւ որ գոմըշտան չոքուց զուրանց լեզուն թալեր են դուրս ու գութան կը քաշեն. Դաւթի խեղճ էկաւ ըղունց վրէն. տըձըկեց զգոմշտանք ու տարաւ գօլ. ու մանձկայն տանիծեց ըղուր։

Սաեց Դաւիթ.

—Մանձկայ, մ՚անիծե զիս. զըդ գութանի զրնջիլ տուր իմ ձեռք—։ Բռնեց զզրնջիլ ու քաշեց. մանձկայ կայնաւ վրէն՝ ինն փաթ զըվըրցուց զգութան։

Հօտայն սաեց Դաւիթին.

—Ըզի քո հըմար չէ, իջի ձիու վրաւէն, քաշէ տեսնենք, քո հըմա՞րն է թէ չէ քո ձիուն—։

Իջաւ, տասն փաթ լէ առանց ձիու քաշեց։

Ըս անգամ մանձկայն սաեց.

—Դաւիթ, դուրբան քըղի. կէս օր է, նստի հաց կեր ու նոր գնա—։

Դուլիթն ասեց.

— Չէ, ես կ'երթամ. թող հաց ձըր ձմեր ուտեն. ես ուտեմ՝ ուրանց բան չմնայ— ։ Ախըր նստաւ ։

Ու յետոյ հաց գրեցին, ինչ ղըքըր հաց կէր ժողվեց ու մէկ հաղ սրբեց, գքաստէք ու գրեց բերան ։

Հօղաղն ասեց.

—Եղմա՛ն, եկէք փախէք, էղի մարդ կ'ուտէ հըպա— ։

Դուլիթն ասեց.

— Լաօ, հըլբա՛ք գուլթան քաշող հաց կ'ուտէ. ինչ կ'էնէ— ։

Ու էլաւ ըղ տեղէն խըւս էրեց Խանդուղ խանըմն ու գնաց ։

Ի։

Գնաց Խանդուղ խանըմի խանի դուռ. (ընանքն է որ ըմէն ուզողներ կ'իգան կ'ինջնեն). էդ էլ գնաց որ մարդու մէկ՝ քօքուզ մի ձեռք՝ կայներ է դուռ ։ Դուլիթ հարցուց ըղուր.

—Տօղըգա՛, քո անուն ինչ պտի ըլնի— ։

Ասեց.

—Իմ անուն Գօրգիզ է ։

Դուլիթն ասեց.

—Գօրգիզ, ես Դուլիթըն եմ. յետոյ ես Խանդուղ խանըմն ասայ, գքեղի կ'էնեմ ընձի քաւոր— .

Իզա անգամ ասեց.

—Բաւո՛ր Գօրքիզ, ո՞ր կայ նեղս— ։

Ասեց.

—Շըրըգան Խորասանի, Հըմզա Լօտայ փահլեվըներու ուզողներն են էկէ— ։

Ասեց.

—Չիմ ձին քաշէ կապէ դու— ։ Բաշեց կապեց ։

Հարցուց.

—Իգա ի՛նչ քօփուզ է դըրած են քու ձեռք. ասեց, հըմ իչեմ—։ Ու ձեռքէն առեց գքօփուզ ու թալեց. ու գըռ հի՛լայ կ՚երթար . . . ։

Ու ասեց .

—Բուռը Գօրգիկ, ներս էրթանք, էնենք կեր ու խում—։

Դաւիթ նստաւ, թաշկուկ ու անօթի է. մէկ մէկ կթխայ գինի կը վերուն ըն մարդեր ու կ՚խման Դաւիթին. Դաւիթ ըէ չկռնայ համբերէ, հիմա կը վերու զգինու տաշտը ու զըմէն ըէ կը խմէ. ու կասէ .—Դէ ասէք Ամուչ եղաւ—։

Գինին զԴաւիկ վերուց, ու զԴաւիթ տարաւ։ Յերոր Դաւիթ հըմըս կ՚եղնի, ու գինուց գլուխ կը ցածցու գետնի վըրէն, ըն մարդեր զուրանց թրեր կը քաշեն որ զարկեն. ու յերոր գլուխ վէ կը վերու, զթրեր կը գնեն ուրանց չողի տակ։

Հեզմ՚ ըէ որ հըմայ եղաւ, քաւոր Գօրգիկ կանչեց.

—Սանճէր Դաւիթ, հօգի մխասասուն է, վրասասուն չէ —։

Դաւիթ յերոր լսեց, ասեց. —Գիդի գըռուռ բռնէ —։

Հիմա ըն մարդեր էլան ու փախան, ամէկ ջըռթ մի զարկեցին Գօրգիկին ու փախան։

Ու Դաւիթ նոր կանչեց զԳօրգիկ. հարցուց զՍանդուզ խանըմ թէ՝ —Յո՞ւր տանենք—։

Գօրգիզն ասեց.

—Խաս բաղչէն։ Լօր ուրբաթ է, քան ջառեա ուր առջեն է. ու քան ըէ՝ նանէն է. լօր կ՚երթանք տեսնանք—։

Գացին սըմեն բաղչէ պառկին ու կայնան Դաւիթն ու Գօրգիկ։ Զարէֆ մէկ մէկ ընցան. էկաւ Խանդուդ խանըմ։ Ձեռք թալեց Դաւիթ խանդուդ խանըմի վիզ՝

ու երեք պագ առեց խանըմից։ Խանըմ չխօսաց։ Հեդմ՝ լէ, ու Խանդուդ բռնեց զԴաւթի փողպատ, զարկեց 'ի պատ, արուն թափեց քթէն։ Հէրստաւ Դաւիթ։

Ու ըդ տեղէն դարձաւ խօսա ուր սուրբ Նշանին, ու ձիուն, որ հեծնի։ Ու ասեց։

—Բաւոր Գորգիզ, քաշէ զիմ ձին, որ աւրեմ զիդա քաղաք—։

Գորգիզ աղաչանք էրէց թէ,—Կը խնդրեմ քենէ, իդա վախք թըղ մնայ, մութն է, լուսուն. լուսուն էլի, աւրէ ու գնա—։

Դաւիթ լէ իր հէրսից պառկեր է մըր մահձքին. էլ քուն լէ չտանի. թէ՝ յե՞բ կ'եղնի որ լուսնայ, ես երնեմ աւրեմ զիդա քաղաք ու երթամ։

Խանդուդը խանըմ լէ բաղչի մէջ սեյրան կ'էնէ. բոփալ ջառեն էկաւ ասեց.

—Սեւ սեյրան էկե քո վրէն. Դաւիթ համդէ ըմկայ զքո պապու քաղաք կ'աւրէ ու կ'երթայ—։

Կապեցին զուրանց բողչեն ու դարձան. ու չխօսկ էկան խանի դուռ զարկեցին որ բանան։

Դաւիթն ասեց.

—Ուհա, ուհա, ըդ ի՞նչ սարըզ են իդա քաղքցիք. սըբըչըն էնե յար առըվտուն, կ'ասեն ըմկայ էլի աւրէ ու գընայ—։

Գորգիզն էլաւ տեսաւ, դարձաւ Դաւիթին ասեց.

—Ըդունք քօլ են, կոտչով չեն—։ Դուռ բացեցին։

Խանդուդն եկաւ մօտ Դաւիթ։ Խանդուդն ասեց.

—Դաւիթ, դու պագ մի առար քո ճամբու խաթրը համար։ Մէկ լէ առար քո խաթրի համար։ Մէկ լէ առար Աստծու խաթրու համար։ Չէւեյի պագն հօրի՞ առար։ Դու քո պապու կտրիճն ես, ես իմ պապուն։ Աստծ են. Չաղչիկն ա՛ռ եզլինուց, որ աղէն եզնի քեռխատան։ Խըյ,

Շըրըղան Խորասականը, Լօրայ Հըմզայ փահլեւններու գլո՛ւխն ես բերե ընձի, որ չէնկլի պագ կ'առնես իմ մօտէն —:

Իդա անգամ Դաւիթ կակղցաւ, ու ասեց.

—Զունէի համայ է, լուսուն ես կ'երթամ գլխուց գլուխ կը բերեմ քըզի —. ու ասեց.— Ես համոյէ կ'էրթամ. Աղաւ որ ընդունք իմ վրէն զօռ եղան, թէ զիս սպանեցին, թը դու գքո Աստուած կը սիրես, առի զիմ ջանդակ ճանչցի, վըր իմ աջ թեւին մաէ խաչ մի կայ, ճանչցի, վերու, բի, առի, սպահէ—:

Դաւիթն էր, էլաւ ընկաւ ճամբին. փեհլիվաններ տեսան որ ձիաւոր մի ընդիուց կ'իգայ. ձիու բօզ երկինք կ'ելնի: Ասեցին.

—Ըղ ձիաւոր կոռւի համար կ'իգայ. չգինանք ըղի Սրգօյի (սուրբ Սարգսի) ջորդերո՞ւցն է— :Կանչեցին հարցուցին.

-Ա՛յ մարդ, դու ի՞նչ մարդ ես, յո՞ւստայ կ'իգաս: Ձընք գինայ դու զԽանդուղ խանըմ կը ճանչնա՞ս. զըղա մասնիկ չը՛ս կընայ հասու ուրան—:

Դաւիթն ասեց.

—Աղէկ կը ճանչնամ, ըմա ես էկէր եմ որ ձըր գլուխ տանէմ Խանդուղին. ես չըմ էկլի մասնիկ տանելու—:

Ըղ Շըրըղան Խորասականի վէրին ունք (յօնք) էնքան էր կախուի, որ էկեր էր հասե վըր սըրտին. ու չանգալով կապեր էր ու զարկե ետեւանց վըր պառեկին:

Ըն մըկէլ Լօռայ Հըմզայ փահլիվանի ներքեւի մաութ զգեստին կ'աւլէր ու կ'երթէր:

Առան իրար Դաւիթն ու էգ երկու փեհլիվան՝ կուրզ ու ֆեմալով, օր մի յար իրիկուն: Դաւիթ կանչեց. — «Եա՛ հաւատամ խոստովանիմ բանձրիկ Մարաթուկ սուրբ Նշան, Յիսուս որդի դու օգնական»—, ու զարկեց զերկուսի գլուխ լէ կտրեց, ու զերկուսի բրչամ լէ

կապեց վրան ու Խուրշիդին առա թափեց վըր բարձին. ու ընդունից լեզուն կախուած՝ զգեստին գուլթնի ակօսի առա կը վազեր: Բերեց վըդունց գլխներ, էկաւ ճամբու կէս, տեսաւ որ մէկ ձիաւոր մէջ երկինք մէջ գետին խառ կ'ելլայ ընդէն, կանչեց վըր Դաւիթին.

—Հօ՜՜, դըբըղի քո վախտին հազըր պահէ. Շըբըղան Խորասանկան, Լօռս Հըմզայ փահլիվընին եւ ռաւս էկե—

Պառեկի բարաձն առաւ Դաւիթեց, կուրզ մի զարկեց: Դաւիթ զբամֆ զարոկեց: Կուրզն առաւ ձիու ղանդուն տարաւ գետին:

Դաւիթ մէկ ըէ չխոկաւ վըր բամֆին, ասեց, — «Եա հայն ու գինի, տէր կենդանի» —: Չկուրզ տարաւ որ զարկէր գլխուն, ըղի գնաւ, ծամեր թափաւ առջեւու. Դաւիթ տեսաւ ու ճանչցաւ որ Խանդուտ խանըմն էր, ուր խըլըն փոխեր էր էկե Դաւիթի առջի: Դաւիթ ասեց.

—Դէյ անզգամ, գլուխս կ'ելլայ որ կուրզ մի զարկեմ դըբըղի խառամ գետնի տակ. ըղէկ երկու հեղ եղաւ, որ բեհամուս կ'էնես գլխ—:

Առան գնաց ու զարձան Խանդուտի քաղաք, ու էկան իջան: Իզա անզամ կանչեցին զԽանդութ խանըմի պապ:

Դաւիթ ասեց.

—Բու աղջիկ չե՞ս խոսար ինձի—:

Պապն ասեց.— Չըմ խոսար: Թէ կ'առնես ու կը մնաս հոդս, կ'խոսամ. թէ կ'երթաս՝ չըմ խոսար: Հօրի, իմ դուշմանի չաու են, կ'ուրեն զիմ քաղաք—:

Դաւիթ ըէ ասեց.— Կ'առնեմ մնամ հոդս. չըմ տանի երթայ —:

Եդդա մըէն՝ ըերեցին տուեցին, զուռնաց պսակն էրեցին, ու եօթն օր եօթ գիշեր հարսնիք էր:

## Ը.

Մէկ ժամանակ կինք ընցաւ. ինն ամիս, ինն օր, ինն սհաթ որ բլմաւ, Աստուած ուրանց տղէ մի տուեց:

Դաւիթն առեց Խանդութ խանըմին.

— Թէ որ իմ տղէն ընձնից է՝ ուր մէջքն նշան մի, զօրութեան մի ա՛ունենի —: Բերեցին տղէն խօնչախ էրեցին, ու բերեցին զգութնի զրնչիլ ալընդի տեղ փաթթեցին վըր տըղին. տղէն էր՝ կտոր լաց ու ճմլկալ մէջ ճղրին, ըղուր վրաւու փաթթուկ զրնջիլ կտոր կտոր եղաւ: Ջուղաբ գնաց Դաւիթին թէ,

— Տղէն խու տըղայ է. զըրնջիլ կտրտեց. ինչ ուր մէկ ձեռք սաղաս է, խրխուկ է, ու մարդ չկըննայ բանալ գուր ձեռք —:

Էկաւ Դաւիթ նստաւ, ու զմանուկի ձեռք մաձեց ու բացեց. տեսաւ որ զուլանբ մի արուն ուր ձեռաւ մէջն էր. ասեց

— Հա՛յ, հա՛յ... զաշխարք աւեր է կաթ մի արուն, գրեր է ուր ձեռաւ մէջ: Թ'որ ըղի մնայ, ըղուր մօտէն զաշխարքի քան ա'ունենի —:

Բերեցին տղէն լէ կնքեցին, ու զանուն դրեցին՝ ՄՀԷՐ:

Մնաց ժուկ մ'ու ժամանակ մի, տղէն մեծցաւ Դաւիթ էլաւ տղէն թողեց ի Գաղզուան մօտ ուր մեծ պապ ու ճոչի. ու առաւ զԽանդութ խանըմն ու խլաս էրեց ի Սասուն: Խալթցիք լէ զգար ժողվեցին ու պատան կապեցին ուր դէմ, ու սիրով մաղարխ չտեցին, կոխ կցեցին: Խանդութ խանըմ զմըզրըրի սուրատը կը զարկէր՝ զպատան կը քակէր, ու գնէր կը թափէր երկու սհաթուան ճամբայ:: Դաւիթ լէ կը ջարդէր զազգար ու կը'ըթէր: Դարձաւ Դաւիթն ասեց.

— Խալաթցի՛ք, դուք ի՞նչ բէնամուս մարդ էք որ արժի դէմ կռիւ կ՚էնէք. թողէք զիս արզ տանիմ Սասուն, ու հրաման՚ըլ իդամ կռուենք —: Ու ըղունք չհաւանեցան։ — Որ հնար է, ասեցին, դէ երդըւէցի քո ծոցի սուրբ Նշան, որ ուտանք —:

Դաւիթ ըլ ձեռք զարկեց վըր ստնըրին՝ որ ուր խեղ-քով զամնըր տ՚երդուէր, ձեռք առ սուրբ Նշանին։ Ու սուրբ Նշանի հուժար ըլ կէն էր՝ որ զինք պիտի չեր-դուընէր։

Ու Դաւիթ տուաւ զԽանդութ ու տարաւ ի Սասնու բերդ։

Ձեռք մնաց ի ծոցք, տեսաւ որ սուրբ Նշան էր ընկի ըռ պարանի ծոցք, ու ինք զէն էր երդուըցի։ Ասեց. — Էյ, իմ բան բարակ է, երթամ ըլ բօս, չերթամ ըլ։ Ըմա ախըր տ՚երթամ —:

Զարկեց էկաւ ի կռիւ, ու Խըլաթցիք զըղի նեղ ըծեցին։ Զին յօրխաւ ի Զըղուրայ չամր, մէջ տըլին. վար հասըլ ըղ տըղի միջէն խըլաւ էկաւ Լօխօրայ ջրի վրէն։

Ըն վախտին որ Սրամէլիք սաղ էր, Սրամէլիք եկեր էր Իբրահիմ աղի տուն, ու զօրով գացեր էր էդ աղի կնկայ մօտ, ու էդ կնկայ տուն ըլ՝ Շըմշըմ խանըմ էր. ու ըղուըր մօտէն եղեր էր աղջիկ մի, որ էն ըլ ըղունց աղջէն էր. էդ ըլ չատ հուժարով էր։ Հա՛ ըղ աղջիկն էր տուեր մէկ նետ ու աղեղ, եկեր էր ըղ տեղ ու փըլեըու մէջ թափըըաւեր էր։ Դաւիթ ըղ Լօխօրայ ջրի մէջ կը լողըն էր. ըղ աղջիկ զըղտուկ նետ մի զարկեց Դաւիթի պատեկ. Դաւիթ էկաւ կայնաւ ու բռնաց. որ բռնաց՝ ձէն գնաց ի Սասուն. Ձէնով Ոհան, Խորգուսան, Քեռի Թորոս, Ծընծղախաքրիք ու Ցռանվէզգին ժողվին զիրար։ Ձէնով Ոհան ըլ Սասնու բռնաց. — Դաւիթ, մընք էկանք —: Ու էկան Դաւիթի հաւարին։ Դաւիթ ըլ ըղ

*Ջրի մէջ զուր աղբօր ձէն լսեց։ Ըղուեք լէ էկան էղ Ջրի խմէչ. հասան Դաւիթին։ Դաւիթն ասեց.*

*—Ջէնով Ոհան, մենք որ բոռացեր ենք. ըղի անու հըմկայ չորցեր է. զաչէք զըղի զոնէք—։*

*Գաչեցին զտան որ մէկ* չինի *աչքեր աղջիկմի. բռնեց Դաւիթ՝ զոաք զրեց վըր մէկ սոմուն, ու քաշեց ճըւ-տեց թայեց սարու տըկու գեղ. ու զըղ գեղի անուն դրեց ՃԸԽՏԻՍ ՃԱՊԿԻՍ։ Ու էդ գեղ լէ յար հըմկա յանդէ* Զըզուրայ *բերան, ու անուն լէ՝ Ճապկիս։*

*Ու ըղունք առին զԴաւիթ էկան ի Սասուն. չորս աւուր ըըման՝ Դաւիթ մեռաւ։*

*Էկան ըղոր աղբրտանք* ծեկր *էրեցին, որ* ղըրմըզի *խառն Խանդութին, ու ըմգուր* սադութեն *առեցին. խա-նըմ լէ ասենց.— Հը՛յ հը՛ւ... Դաւիթից եառև ես ո՛նց-նիմ կյանց* հաւջայ*...—։*

*Ճնճղախոքրկին ասեց։*

—«Խանդութ խանըմ, բը մըռ, բը մըռ,

Դաւիթ մըր, սարեմըն *խօռ*»

*Իզա անգամ Խանդութն էյաւ բերդի գլուխն. ու յանգցայ զինք թայեց. ուր գլուխն առաւ վըր քարին. ուր գլուխ ծակեց դքար, ու գլխու տեղ, Սասնու կէս չնիկ (չափ) կորեկ կը լին յինք ու ծեծեն. սանդի տեղ։ Ուր եօթ ձիւղ ծամի տեղ լէ՝ հըմկայ կ՚երեւայ, ու միայ լէ ըդ սանդ յանդ է բերդի առէջ։*

Ժ.

*Գոման Դաւիթի աղբըրտանք ու էկան վըր Խանդութ* խանըմին*. ձեռ առեցին* խանըմի *ծիծք որ կախ կէր.* չըհէյի *որ ձիժ կէր։ Էկան ժողվեցին զերար, ասեցին.—* Բըլէել *ինչ որ եղեր է, ըն տեղն—։ Ու զացին հասան ի Գաղզուան. ու տեղը Նստողին ասեցին.*

—Մըր աղբօր ու հարսին ըղ տեղ ճիժ կայ. ո՞ւր է—:

Ըղոնք լէ ասեցին.

—Բան չկայ—:

Ըղ մօրքին ասեցին թր,

—Մըզի նշան կայ. մըր հարսի ծիծ կաթ կէր—:

Մըկըլոնք ասեցին սուա թր,

—Աղջիկ մի ուր մօտից եղեր է, ու մեռեր է—:

Ըղոնք լէ ասեցին.

—Մըր մեռելուն նշան կայ. մըր մէկ տարեկան՝ մէկ չէնքով է. երկու տարեկան մըր երկու չէնքով է, ու հիմկայ—: Էլան գացին գերեզմըններ՝ որ ուրանից չէնքով գերեզման չկէր: Ձէնով Օհան ասեց.

—Բերէք գլաշիք փաթէք յիս, որ ես բռնամ—:

ԶՄհեր՝ մաղազա է չինած ի գետնի տակ. պահապան է դրած վըր ուրան, ու գլխի դրած ի նէրս:

Ձէնով Օհան փաթեցին կաշով՝ ու բռնաց. Մհեր զուր ձէն հասկցաւ: Մհեր էրեց որ պխտի էնէր. ձոչիկն առեց. —Ըզի ձըր ջրնսի ձէն չէ. ձիժերն են ու պահօղներն են. ընդանց ձէնն է—: Մհեր երեք հաղ որ զձէն հասկցաւ, զարկեց զդարգէն կոտրեց էլաւ դուրս: Դարգէն զդարգէն կոտրեց. լանգէն որ զարկեց առջի դարգին, ընի տաւ մըկէլին. մըկէլ մըկէլին. գեօթ լէ ջարգեց էլաւ դուրս:

Տեսաւ որ ուր հօրբրտանք հոդ են, ուր պապ հաղ չէ: Հարցուց հօրբրտանց, որ Խլաթցիք զուր պապ սպաննած են: Լա՛ց, ու վըր քիթ ու բերնին ընկաւ դուձ: Որ ընկաւ վըր գետնին, ըղուր հօրբրդանք թափան վրէն՝ խմոյ էրեցին չկրցան չափեցին:

Մհերի արտասուք զգէտին էրեց հանդակ ու գնաց: Իրեք օրն որ թըմաւ, Մհեր նոր չափկաւ: Հեծաւ զպապու քուռակ, ու գնաց ի Խլաթ, քար ու քանդ էրեց: Հըմկայ կ՚աւրէ՞... ու կ՚ելնէ Նըմրութայ գլուխ, կ՚իշկէ որ ծուխ կ՚ելնէր. հաղմ՝ լէ կը դառնէր: Տեսաւ որ պատուսկ մ՚էր մանցի, զէն լի բռնեց. դամէկ ռաք կա-

պեց մէկ ծառ, ու գծառեր թողեց. դէղ լէ հիմալ սպա-նեց. Խլաթայ ծուխ ու մուխ կորեց։

Ու էդ տեղէն իզին տուեց հօղբրդանց, գացին ու-րանց տեղ. ու ինք գնաց Տօսպան բլուր։ Ու յարի մը-կալէ կ'առնէն էն տեղն է, ու ամեն լէ զուր ձին կը տես-նան. ու բղուր ձիու չեռ ամեն լէ քարուց կ'իջայ։

Ժ.

Համբարձման գիշեր Մհերի էրի դուռ կը բացուի, ու հրամանք չկայ որ ելնայ. գետին զինք չվերու. ոտքեր ի գետին կը ծլին։

Որ մ' լէ, Նախրորդ մի, Համբարձման գիշեր կը տես-նայ որ Մհերի դուռ կը բացուի, Նախրորդ կը մտնէ ներս. Մհեր էղուրից կը հարցու թէ,

—Ի՞մալ դուք զաչխար կ'ուտէք—։

Էն լէ կ'սէ.— Ախլքով—։

Կը վերու Մհեր ու կ'սէ.

—Ձեր խելքն իմալ է. դէ զըլա ձիու տոպրակ վերու զար գլուխ—։

Նախրորդ խմալ էրեց, չկրցաւ վերուց. բերեց դձին տոպրկին մօտ, բերան բացեց. դձիու գլուխ մտուց ինք, ու զթեղ թօղեց վըր ձիու վզին. ու ձին բանձրցուց զգլուխ. ու Նախրորդ քաշեց տարաւ ուր տեղ կապեց. ու սեց.

—Մըր խելք հըմլա է. մենք հըմլա կուտենք զաչխար—։

Ու Նախրորդ հարցուց.

—Մհե՛ր, դու յե՞ր տ'ելնես էդ տեղէն—։

Էն լէ սեց.

—Ցեբոր ցորեն եղաւ քընց պուճ, ու գարին եղաւ քընց մասուր մի. հըմամ՚լէ հրամանք կայ որ էլնանք իդա տեղէն—։

Երեք խնձոր էջաւ յերկնուց. մէկն սազին, մէկ խա-ղին, մէկ լէ ալամ աշխարին։



# ԲՐԴՈՒՃ ՄԸ

## ՎԱՆԱՑ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԱՆԳԻՐ ԲԱՆԱՀԻՒՍՈՒԹԵՆԷՆ



### ԱՒԱԳ ՄԿՆԻԿ (1)

*Աւագ մկնիկ խաթունի աշմաղ կը քաշէ մէր գլխուն կ'երթայ։*

*Հովիւ կու գայ դէմ՝ կ'ասի.*

*—Խէր էլնի, Աւագ մկնիկ, էդա ալայով դո՞ր կ'երթաս։*

*—Խէր բարին վէրէգ էլնի, պիտի երթամ իրիկ անեմ։*

*—Գնա, Աստուած ռաստ բերի։*

*Կ'երթայ կ'երթայ, բէրուորիկ կու գայ դէմ՝ կասի.*

*—Խէր էլնի, Աւագ մկնիկ, էդա ալայով դո՞ր կ'երթաս։*

*—Խէր բարին վէրէգ էլնի. կ'երթամ իրիկ անեմ։*

*—Գնա, Աստուած ռաստ բերի։*

*Կ'երթայ կ'երթայ, ծով կու գայ դէմ կ'ասի.*

*—Խէր էլնի, Աւագ մկնիկ, էդա ալայով դո՞ր կ'երթաս։*

*—Խէր բարին վէրէգ էլնի. կ'երթամ իրիկ անեմ։*

*—Գնա, Աստուած ռաստ բերի։*

---

(1) Սորա հետեւողութիւնն է Մկնիկ խաթուն բռուած մասալը որ Պոլսոյ պառաւունք կը պատմեն ի զրօսանս մանկանց։

Կ'երթայ կ'երթայ, ահագին սար կու գայ դէմ. կ'ասի.

—Խէր էլնի, Աւագ մկնիկ, էդա ալայով դո՞ր կ'երթաս։

—Խէր բարին վերեդ էլնի. կ'երթամ իրիկ անեմ։

—Գնա, Աստուած ռաստ բերի։

Կ'երթայ կ'երթայ, մէկ չինարի ծառ կու գայ դէմ. կ'ասի.

—Խէր էլնի, Աւագ մկնիկ, էդա ալայով դո՞ր կ'երթաս։

—Խէր բարին վերեդ էլնի. կ'երթամ իրիկ անիմ։

—Գնա, Աստուած ռաստ բերի։

Կ'երթայ կ'երթայ, անծեղ կրկչալէն կուգայ դէմ. կ'ասի.

—Խէր էլնի, Աւագ մկնիկ, էդա ալայով դո՞ր կ'երթաս։

—Խէր բարին վերեդ էլնի, կ'երթամ իրիկ անեմ։

—Գնա, Աստուած ռաստ բերի։

Կ'երթայ կ'երթայ, Թագաւորու ազլոր կը թռնի կու գայ դէմ. կասի.

—Խէր էլնի, Աւագ մկնիկ, էդա ալայով դո՞ր կերթաս։

—Խէր բարին վերեդ էլնի. կ'երթամ իրիկ անեմ։

—Արե ձիկ ա՛ռ։

—Ձիկ ինչո՞վ կը պախես։

—Կըտըրցով։

Մէյմէկու կը խառնեն. կ'երթան, եօթն օր

եօթն գիշեր խարոնիս կ'անեն, կը փակուեն։

Խարոնիսից կը պռծնեն. ագլոր կ'երթայ քճէճ անելով դատում ճարել։ Աւագ մկնիկն ի կը մտնի թոնէր որ թոնէր վառւի, թոնէր կպե, Մնացե մէջ թորուան վառւե էլե ճժտիկ վժտիկ։

Ագլորն իրիկուն իկե տուն, տիսե որ Աւագ մկնիկն ինկե թոնէրն էլէ ճժտիկ վժտիկ։ Գնացե կատար կտրե, կրամոխիր տուե վէր Գլխուն նստէ։

Անծեղն իրե, տեսաւ, ու ասաց.

—Ագլորիկ, դու հէ՞ր կատարկտրիկ, մոխրաչափիկ։

—Ո՛ւյ. Ագլորիկ կատարկտրիկ մոխրաչափիկ, Աւագ մկնիկն ինկէ թոնէրն էլէ ճժտիկ վժտիկ։

Անծենղ ի փետուրներ կը թափէ, կ'երթայ նստի վէր ծառին։

Ծառիկն ասաց.

—Անծղիկ, դու հէ՞ր թեւաթափիկ։

—Ո՛ւյ. Անծղիկ թեւաթափիկ, Ագլորիկ կատարկտրիկ մոխրաչափիկ, Աւագ մկնիկն ինկե թոնէրն էլե ճժտիկ վժտիկ։

Ծառ կոտրաւ ինկաւ վէր քարին։

Քարն ասաց.

—Ծառիկ, դու հէ՞ր ճղակուտոր։

—Ո՛ւյ. Ծառիկ ճղակուտոր, Անծղիկ թիւաթափիկ, Ագլորիկ կատարկտրիկ մոխրաչափիկ Աւագ մկնիկն ինկե թոնէրն էլե ճժտիկ վժտիկ։

Քար գլորվաւ գնաց ինկաւ ծով։

Ծովն ասաց.

—Քարին, դու հէ՞ր գլոր մլոր։

—Ո՛ւյ. քարիկ գլոր մլոր, ծառիկ ճղակու-տոր, Անծղիկ լծեւաթափիկ, Ագլորիկ կատար-կըտրիկ մոխրաչափիկ, Աւագ մկնիկն ինկե թո-նէրն էլե ճժտիկ վժտիկ։

Ծովը էր մէկէցմէկ բրորաւ.

Բէրուորիկն ասաց.

—Ծովիկ, դու հէ՞ր բրոր մրոր։

—Ո՛ւյ. ծովիկ բրոր մրոր, քարիկ գլոր մլոր ծառիկ ճղակուտոր, Անծղիկ լծեւաթափիկ, Ագ-լորիկ կատարկտրիկ մոխրաչափիկ, Աւագ մկնիկն ինկե թոնէրն էլե ճժտիկ վժտիկ։

Բէրուորիկն կթոց ի չարկ ուխին գնաց։

Հովիւն իրեն դէմն, ասաց.

—Բէրուորիկ, դու հէ՞ր կթոց ուխիկ։

—Ո՛ւյ. բէրուորիկ կթոց ուխիկ, ծովիկ բրոր մրոր, քարիկ գլոր մլոր, ծառիկ ճղակուտոր, Անծղիկ թեւաթափիկ, Ագլորիկ կատարկտրիկ մոխրաչափիկ, Աւագ մկնիկն ինկե թոնէրն էլե ճժտիկ վժտիկ։

Հովիւն որ լսեց, ոխչարն իթող, գնաց։ Մաքին մկկալով իղկաւ իտեւ, դարձուց իրե. եօթ տակ պըտըտաւ ոխչրի բուլոր պտըտրեց, ասաց.

«Վէր Աւագ մըկան կողին.
«Վէր Աւագ մըկան կողին.
«Վէր Աւագ մըկան կողին.

—•>>>>•<<<<•—

## ՎԵՐՋԱԲԱՆ

Կը հրաւիրեմ ընթերցողի ուշադրութիւնը այս վերջին Բրգուճին վրայ, որոյ նիւթը թէպէտ ըստ ինքեան չնչին, բայց բանահիւսութեան ճարտար ձեւը իւր քաղցրեղումով և արուեստաւոր կապերով գեղեցիկ ու վայելուչ ոճ մը տուած է շարադրութեան, միանգամայն և ներդաշնակ։

Որոնք հանդիպած են այն հագներգութեան որ տը-պագրուած է արդէն երգարանաց մէջ.

«Ելէք տեսէք զի՞նչ կայր ծովուն,
«Որ նաւն ուռամբր գայր».

գիտած են թէ միևնոյն բազմայեղանակ ոճն ունի այս Բրդուճն ալ. ինչպէս նաև բաւական շատ կայ այդ ոճով զրոյց կամ հագներգ Վանայ ժողովրդեան բերանը։ Յորոց մէկն է այն խաղը, որոյ սկսուածքն է

«Ո՞րն է կերեր մեր էծ,
«Գէլն է կերեր մեր էծ»։

Կ՚արժէ որ ընդհանուր հաւաքում մը շինուի այս-պիս խօսից և հիւսից, իրենց բնական կերպարանքով տպագրել տալով զանոնք, որոց հարստութիւնը ինչպէս ինձ կը թուի, Վասպուրականի և Սիւնեաց գաւառի Հայոց մէջ առատ կայ։

Իրաւ է, որ Հայաստանի Հայք բառերու հնչմանց այլեայլութիւն մը տուած են. զորօրինակ, մայր՝ մէր հնչելով. եղբայր՝ աղբէր, մարգարէ՝ մարգարա, անկաւ՝ ինկաւ, որոց մէջ կը տեսնուի այ՝ էի. ե՝ աի. է՝ աի, ա՝ իի, փոխուած, և ուրիշ շատ տառափոխութիւններ ալ ունին. բայց և այդ ալ լեզուի մը յատկութիւնն է։ Ունին բառեր ալ, որ ըստ մեծի մասին կրճատ կ՚արտա-սանեն. բայց արմատները հարազատ կը պահպանեն.

*ըսածիս օրինակները շատ կան* Սասունցի Դաւիթին *և* Բրդունենի *մէջ: Խօսք մը կազմելու համար բառերու ամենէն կարեւոր մասն է բային. գործածելով ուշադրութիւն գաւառացւոց լեզուին վրայ, կը տեսնենք որ Բաղիշեցին այսպէս կը կազմէ կամ կը խոնարհէ բային.*

« Ես եմ շիներ եմ *այս տունը* ».
« Դու ես կոտրեր ես *մեր ծառը*».
« Մարգարն էր տարեր էր *հացը* » *եւայլն:*
*Դուրիզեցին այսպէս.*

« Գնացիմ, տեսամ, ասամ, եկամ ». *այսինքն է գնացի, տեսայ, ըսի, եկայ:*

*Ղարաբաղցին այսպէս.*

« Գամ եմ, գամ ես, գամ է ». *այսինքն է, գամ, գաս, գայ. եւայլն::*

*Մշեցին բայի հայցական խնդրի* զ *նախդիրը մինչեւ անգամ յատկացուցչի վրան ալ չեն զանց ընել դնել.— Օրինակ.* « Զէռ պապու մեռլի գլխու վարշամակն... » *կ՚ըսէր Մշեցի մը Մշեցւոյ մը:*

*Ինչպէս բայերուն. նոյնպէս բառերուն հոլովներն ալ այլ խմն են ժողովրդեան բերանը. գործօրինակ. նշանի բացառականները գաւառացին* ից, ուց *յոգնակիականացուցիչ մասնիկներով կը կազմէ: Օրինակ. տունից. ի տանէ: Սարըծուց, յՍարուծոյ: Մարդուց, ի մարդոյ եւայլն: Մէկալ հոլովներն ևս այլափոխութիւն ունին:*

*Իսկ անցեալ դերբայի ձեւն ու նշանակութիւն տուող բառերը. կրաւորականն ու չէզոքը, գրեթէ մեծաւ մասամբ* ուկ *լծորդով կամ մասնիկով գործ կ՚ածեն: Օրինակ. պառկուկ. պառկած: Ցանուկ. ցանուած: Հասուկ հասունցած. Բիծուկ. բիծած.—սառկած— եւայլն:*

*Ունի գեղեցիկ ու զեղջման, անկարգութեան, և բակառութեան, կրկնութեան, փոխաբերութեան, համաձայն մեր գրական լեզուին:*

Գաւառական լեզուի ոճերուն և բառերուն վրայ ընդարձակ գաղափար առնուլ ուզողը պէտք է ընթեռնու Սէյեաթ Նովայի երգարանի սկիզբը, նոյն երգոց հրատարակիչ գիտնական Գ. Գ. Հախվէրդեանցի հմտալից գըրածները, որ Թիֆլիզցւոց Հայերէն լեզուին վրայ քերականութիւն մ'ալ յօրինած է. գործ՝ արդարեւ հանճարեղ և իմաստասէր անձին. բայց ափսո՜ս, որ այնքան ընդհանրացած չէ Տաճկաստանի Հայ բանասիրաց մէջ։

Իմ փափաքս եղած է որ բանասէրք ուշադրութիւն դարձունեն Հայաստանի մէջ խօսուած Հայոց ժողովրդական լեզուաց, և այն լեզուներով հրատարակեն մէկեր տրամախօսութիւններ եւայլն. և այսպէսով սիրելի և ծանօթ կացուցանեն զանոնք գրագիտաց, որպէս զի նոյն ձևոքով հետզհետէ ի կանոնաւոր գործածութիւն վերածեն այն լեզուները. և ժամանակին մաշող ժանիքէն զերծանեն ազգային դարաւոր բանից և աւանդից յիշատակները, որոց արժէքը կորուսելէն յետոյ կ'զգանք, զանոնք աւաղելու համար միայն։

